խումբին գլխաւոր պետը, որդի հանգուցեալ Մելիք Ճիհանտատ խանի, ինքզինքը Էմիր յայտարարած է Խոսթի մէջ։ Յիշեալը չորս տարի առաջ ապստամբած էր Ամանուլլահ Թագաւորին դէմ։

«Թայմզ» կը տեղեկանայ թէ Ամանուլլահ Թագաւորին կարգ մը ազգականները եւ բարձրաստիճան պաշտօնատարները ձերբակալուած են Քապուլի մէջ։ Գրաւուած են նաեւ անոնց ինչքերը։

Հեռագիր մը կ՚ըսէ թէ Պէչէ Սաքա իր գինուորները կը կեդրոնացնէ Քապուլի մէջ եւ ղանոնք դրած է Սէյիտ Հասանի հրամանին տակ։ Փէշավարի մէջ զրոյց կը շրջի թէ Ալի Ահմէտ Ճան սպաննուած է Ճակտալաքի մէջ։ Կը հաստատուի թէ իշխան Մոհամմէտ Խան, որ Ալլահապատէն փախած էր, ներկայիս Շինվարիներուն հետ է։

Ամանուլլահի ամէնէն կրտսեր եղբայրը՝ Քեապիր Խան ձերբակալուած և մահուան դատապարտուած է։ Ամանուլլահի նախկին պաշտօնատարներու հեռաւոր ազգականներն ալ կը կեղեքուին եւ կը կողոպտուին։

Ամանուլլահի կոչին պատասխանելով, բազմաթիւ կամաւորներ կը փութան նախկին թագաւորին կազմած բանակատեղին՝ Քանտահարէն երկու մղոն դուրս։ Նորագիրները կը մարզուին իբրեւ թնդանօթաձիգ, սակայն ռումբ կը պակսի, որով Պարսկաստանէն ռազմանիւթ ապսպրուած է։

Վերջերս հասած թուրք սպաները մեծ գործունէութեան մէջ են՝ նոր բանակը մարզելու համար։

Մոսկուայի աֆղանական դեսպանը պաշտօնապէս կը հաղորդէ որ Ամանուլլահ ետ առած է իր գահէն հրաժարումը եւ վերստացած է «Աֆղանիստանի Թագաւոր» տիտղոսը։

## Պոլսեցիներու արձանագրութիւնը

Ներքին գործավարութենէն տրուած հրամանի մը վրայ, Պոլսոյ ոստիկանական կեդրոնները թաղերու բնակիչները սկսած են արձանագրել։ Արձանագրութիւնները փետրուար 15ին պիտի աւարտին։

Այս առթիւ առանձին պիտի արձանագրուին նաեւ Պոլիս բնակող օտարահպատակները, գաղթականներն ու քաղաքական փախստականները, որոնց թիւը որոշուելով Գործավարութեան պիտի հաղորդուի։

## Զինովիեւի եւ Կամենեւի ձերբակալութիւնը

Մոսկուայի պաշտօնական գործակալութիւնը կը հերքէ Գ. Միջազգայինի նախկին նախագահ Զինովիեւի եւ Մոսկուայի շրջանի նախկին կոմիսար Կամէնեւի ձերբակալութեան լուրը։

Հակառակ այս հերքումին, Ռիկայէն հասած հեռագիր մը կ՚ըսէ թէ Ստալին պաշտօնապէս հաղորդած է Զինովիեւի եւ Կամէնեւի ձերբակալութիւնը։ Ստալին աւելցուցած է թէ Տրոցկիի գրաւուած թուղթերուն մէջ գտնուած են Զինովիեւի և Կամէնեւի կողմէ գրուած բազմաթիւ նամակներ, որոնք կը հաստատեն թէ նախկին համայնավար պետերը կանոնաւորապէս տեղեկագիր կը ղրկէին Տրոցկիի՝ հաղորդելով իրենց ձեռք առած միջոցները՝ Ստալինը տապալելու համար։

Զինովիեւ Մոսկուայի կառավարական տպարանին մէջ փոքրիկ պաշտօն մը ունէր. կ՚աջակցէր խմբագրութեանը բոլշեւիկեան համայնագիտարանի մը, որուն վեց հատորները (որ կը պարունակեն միայն ռուսական այբուբենի երեք տառերը) հրատարակուեցան վերջին վեց տարուան ընթացքին։ Իսկ Կամէնեւ մեքենաշինութեան կոմիտէին մէջ աննշան պաշտօն մը ունէր։

Տրոցկիի կուսակից բանուորները գործարաններէն կը հանուին, կուսակցութենէն կը վտարուին եւ առանց դատավարութեան Սիպերիա կ՚աքսորուին։ Մոսկուայի թերթերը կը գրեն թէ երկուշաբթի օրուընէ ի վեր չորս կառախումբեր մեկնեցան դէպի Սիպերիա՝ տանելով 1,600 Տրոցկիականներ։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: E. SOUVIGNY

*նայ։ Այս հաշտարար քայլը կը կարծուի թէ պիտի փոխէ այդ տպաւորութիւնը։*

*Սահմանագլուխի փակումը այսքան երկարաձգուեցաւ անոր համար որ եուկոսլաւ կառավարութիւնը համոզուած չէր թէ Սոֆիայի մէջ կարելի ամէն բան եղած է՝ խափանելու համար Մակեդոնացի յեղափոխականներու գործունէութիւնը։ Միւս կողմէ այն հաւատքը կար թէ պուլկար քաղաքականութիւնը կախուած է Պուլկարիոյ հանրային կարծիքէն։*

*Սահմանագլուխներու բացումը ցոյց կուտայ թէ Ալեքսանդր Թագաւորի կառավարութիւնը եկած է այն եզրակացութեան որ քաջալերութեան արժանի են Պուլկարիոյ մէջ այն տարրերը՝ որոնք կը հակառակին Մակեդոնիոյ Յեղափոխական կազմակերպութեան գործունէութեանց։*

## Արեւել. ճեպընթացը դեռ Պոլիս չէ հասած

*Փետրուար 1էն ի վեր ո՛չ մէկ թղթատար հասած է Պոլսէն, ճամբաները ձիւնէն անանցանելի ըլլալով տակաւին։*

*Միւս կողմէ Սէնփլօն-Արեւելեան ճեպընթացը, որ յունուար 29ի իրիկունը Փարիզէն Պոլիս մեկնած էր, դեռ Պոլիս չէ հասած։ «Թայմզ»ի Պոլսոյ թղթակիցը կը հեռագրէ թէ Թուրքիոյ նախկին մայրաքաղաքին մէջ մեծ մտահոգութիւն կը տիրէ այս առթիւ։ Յիշեալ ճեպընթացը Պոլիս պէտք է հասնէր փետրուար 1ին կէսօրէ վերջ, սակայն աւելի քան մէկ շաբաթէ ի վեր ձիւներու մէջ մնացած է Թրակիոյ Չէրքէզ Քէօյ կայարանին մէջ, Պոլսէն 80 քիլոմեդր հեռու։*

## Եղեռնափոոծ մը Թունուզի մէջ

*Թունուզէն կը հեռագրեն թէ առջի առաւօտ ժամը 5ին ռումբ մը պայթեցաւ իտալական հիւպատոսարանին մէջ։ Օր մը առաջ հոն հասած էր իտալական նորընտիր հիւպատոս Պարտուցցի։ Ապակիները ջարդուփշուր եղան։ Զոհ չկայ։ Նիւթական կորուստներն ալ աննշան են։*

*Կը կարծուի թէ եղածը հակաֆաշիստներու կողմէ սարքուած ցոյց մըն է։*

## Եւրոպայի Գեղեցկուհեան Թագուհին

*Հինգշաբթի օր Փարիզի մէջ 17 ազգերու ներկայացուցիչ արուեստագէտները ընտրեցին «Եւրոպայի Գեղեցկութեան Թագուհին»։ 17 ազգեր իրենց ամէնէն սիրուն աղջիկները ղրկած էին Փարիզ։ Ընտրուեցաւ Հունգարիոյ թագուհին՝ Օր. Էլիզապէթ Սիմօն, որ այժմ փոխանակ «Միս Հունգարիա»յի՝ կը կոչուի «Միս Եւրոպա»։ Դատաւորներուն արգիլուած էր քուէ տալ իրենց երկրի գեղուհիին։*

*17 թագուհիները երէկ մեկնեցան Նիս, ուր տեղւոյն քաղաքապետութեան հիւրը պիտի ըլլան։ Յետոյ պիտի երթան Ամերիկայի կալվըսթըն քաղաքը (Թէքսասի Նահանգ), ուր պիտի մասնակցին «Աշխարհի Գեղեցկութեան Թագուհի»ի մրցումին։ «Միս Եւրոպա» միւսներուն հետ հաւասար աստիճանի վրայ պիտի մասնակցի մրցման։*

---

Տէր եւ Տիկին Ստեփան կանոնեան եւ իրենց զաւակը, Օրիորդ Ոլիմպիա կանոնեան, Տէր եւ Տիկին վահան վարդերեսեան, Այրի Տիկ. Ֆլորա Նալպանտեան (Սիլիստրէ), Պ. Յակոբ Փափազեան, (Սիլիստրէ), Այրի Տիկ. Մ. Ֆնտըգեան (Պոլիս), ինչպէս նաեւ բազմաթիւ ազգականներն ու պարագաները ցաւօք սրտի կը ծանուցանեն իրենց պաշտելի եւ սրբուհի մօր, քրոջ եւ ազգականին՝

**ԱՅՐԻ ՏԻԿ. ԳՐԻԳՈՐԻՍ ԿԱՆՈՆԵԱՆԻ**

(ԾՆԵԱԼ ՍՐԲՈՒՀԻ ՓԱՓԱԶԵԱՆ)

դառնաղէտ մահը, որ տեղի ունեցաւ փետր. 7ին Մոնմորանսիի իր բնակարանին մէջ։

Յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ երէկ ժամը 1ին եւ մարմինը ամփոփուեցաւ Մոնմորանսիի գերեզմանատունը։

*
* *

Հանգուցեալը մայրն է Պոլսոյ ֆրանս. դեսպանատան նախկին մամուլի Ա. Թարգման, *Սթանպուլի* եւ *Ֆիկառօ*ի աշխատակից Պ. Ստեփան կանոնեանի։

---



---

EMPIRE, Միւզիք-Հոլ. 37 Av. Wagram

| Cirque de Paris | Էքոլ Միլիթէր | ամենալաւն ու աժանը | 2-14 ֆրանք |
|---|---|---|---|

---

WALTER STRARAM*ի*

**ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ**

*Շան զ'Էլիզէի Թատրոնին մէջ։ Յայտագիր 4րդ նուագահ. 14 Փետր. Հինգշաբթի։ Պէթհովէնի* Ouverture de Coriolan*ը, Ա. Ժէտէժի Գ. Սէնֆոնին, Ա. Ֆէվրը Լոնժըռէի 3 պարերը (Ա. անգամ). Ռավէլի Տաֆնիս եւ Քլոէ* (Suite d'orch.)*։ Մուտք 2—40 ֆր. Շան զ'Էլիզէի Թատրոնը, 13—15* Av. Montaigne *եւ Տիւրանի մօտ։ Նուագահանդէսը կը սկսի ճիշդ երեկոյեան ժամը 9ին։*



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: F. SOUVIGNY

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

կազմակերպուած Ա. Ե. Հ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղին կողմէ
Այսօր կիրակի իրիկուն ժամը 8.30ին,
19 Rue de Varenne, Nord Sud: Rue du Bac
*կը խօսի Պ. ՆԻԿՈԼ ԱՂԲԱԼԵԱՆ*
Նիւթ՝ «Ազգութեան պահպանում»ը

---

## «ՓԵՏՐ. 18»Ը ՊԻՅԵԱՆՔՈՒՌԻ ՄԷՋ

*ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ Հ. Յ. Դ. ՎՌԱՄԵԱՆ ԵՆԹԱԿՈՄԻՏԷԻ ԿՈՂՄԷ*
17 փետր. կիրակի ժամը 2.30ին, 5 Pl. Nationale, Billancourt
*Բանախօսութիւն, երգ, նուագ, արտասանութիւն եւ անակնկալներ*
*Մ Ո Ւ Տ Ք Ը   Ա Զ Ա Տ   Է*

Աֆղանիստանի Նախկին պատերազմական Նախարար Նատիր խան, որ Նիսէն ճամբայ ելած էր, Պոմպէյ հասաւ եւ Ռիւթէրի գործակալութեան թղթակցին յայտարարեց թէ կ'երթայ իր միջնորդութեամբ խաղաղութիւնը վերահաստատելու Աֆղանիստանի մէջ։ Ինք կամ իր գերդաստանէն ոեւէ մէկը աչք չունի գահին։

Կացութիւնը կը մնայ շփոթ, ու մինչեւ Ռամազանի վերջը եւ ձիւներու հալիլը կարելի չպիտի ըլլայ կայուն վարչաձեւ մը հաստատել։ Ներկայիս կատարեալ անիշխանութիւն կը տիրէ, իւրաքանչիւր շրջանի մէջ ամէնէն զօրաւորը ինքզինքը էմիր կը հռչակէ։

1928 դեկտ. 23էն մինչեւ 1929 փետր. 11 Քապուլէն անգլ. օդանաւերով Հնդկաստան փոխադրուեցան՝ 216 Անգլիացի, 32 Աֆղան, 11 Ֆրանսացի, 42 Թուրք, 34 Գերման, 4 Իտալացի, 19 Պարսիկ, 1 Ռումանացի, 1 Զուիցերացի, 5 Սուրիացի, 1 Ամերիկացի։ Ընդամէնը 366 հոգի, որուն 280ը կին եւ երախայ։

## Անգլօ-ռուս յարաբերութիւնները

Անգլիոյ Լորտերու ժողովին քանի մը Լորտեր հարցապնդեցին կառավարութիւնը Ռուսիոյ հետ առեւտրական յարաբերութեանց մասին։ Կառավարութեան կողմէ Լորտ Ճորճ Լիւքան պատասխանեց.

— «Այս կէտին մասին մեր պատասխանը նոյնն է։ Մեր քաղաքականութիւննէ մերժել առեւտրական դիւրութիւններ տալ խորհրդային կառավարութեան, մինչեւ որ այդ կառավարութիւնը պարտքերու եւ գրաւուած գոյքերու մասին չընէ այնպիսի կարգադրութիւն մը, որ վերահաստատէ իրեն հանդէպ վստահութիւնն ու վարկը»։

Լորտ Լիւքան աւելցուց թէ ո՛չ ոքի արգիլուած է առեւտուր ընել Ռուսիոյ հետ։ Դիտել տուաւ թէ ներկայիս այդ երկրին հետ առեւտուր ընող մեծագոյն վաճառականները հպատակ են այնպիսի երկիրներու, որոնք ո՛չ մէկ համաձայնագիր կամ վարկի մասնաւոր դիւրութիւններ ունին խորհրդային միութեան հետ։

## Կացութիւնը Սպանիոյ մէջ

Դիկտատոր Փրիմօ տը Ռիվէրա յաջողեցաւ կայսերական հրովարտակով լուծել տալ թնդանօթաձիգներու մարմինը, որ կը բաղկանար 35 զօրագունդերէ՝ ցրուուած Զիւտատ Ռէալի, Սէվիլլայի, Վալէնցիայի, Պարչելոնայի, Պուրկոսի, Վալլատոլիթի եւ Սեկովիոյ մէջ։ Միայն Սեկովիոյ մէջ է որ խլրտումներ ծագեցան։ Երբ հետեւակազօրքի սպաներ եկան թնդանօթաձիգներու վարժարանը գրաւելու համար, ուսանողները ըմբոստացան։ Սպաները հետեւակ զինուորներուն հրամայեցին կրակ բանալ. զինուորները մերժեցին։ Ուսանողները պաշարեցին ու բանտարկեցին հեծելազօրքի սպաները, մինչեւ որ ոստիկան զինուորներ հասնելով ազատեցին զանոնք։

Այժմ կացութիւնը խաղաղ է եւ դիկտատորը աւելի քան երբեք կը սեղմէ օղակները, մասնաւորապէս ճնշելով մամուլը։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՄԻՍՈԼՈՆԿԻԻ (Յունաստան) քաղաքապետարանը ամբողջովին այրեցաւ։ Վնասը 3 միլիոն տրախմիի կը հասնի։ Փճացան բազմաթիւ յիշատակներ անկախութեան պատերազմի պաշարումէն եւ Լորտ Պայրընէն։

ՉԻՆԱՍՏԱՆԻ մէջ 20 միլիոն հոգի սովէ կը տառապին։

ՓԱՐԻԶԻ ամերիկեան գաղութը առջի օր հանդիսաւորապէս տօնեց Միացեալ Նահանգներու ազատարար եւ եւ Հանրապետութեան Ա. Նախագահ Ճորճ Ուաշինկթընի ծննդեան տարեդարձը։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY


## „ՓԵՏՐՈՒԱՐ 18"Ի ՀԱՆԴԷՍՆԵՐ

ԱԼՖՈՌՎԻԼ

Կազմակերպուած Սարգիս Մինասեան ենթակոմիտէին կողմէ։ Այսօր կիրակի ժամը 2.30ին, 128 Rue Etienne Dolet, Պ. Յակոբի սրճարանը։

Կը նախագահէ՝ Ընկ. Լ. ԶՈՐՄԻՍԵԱՆ

Կը խօսի՝ Ընկ. ՆԻԿՈԼ ԱՂԲԱԼԵԱՆ

ՀԱՆԴԷՍ-ՑԵՐԵԿՈՅԹ ՊԻՅԵԱՆՔՈՒՌԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Մ. Ը. Մ.ի Պիյեանքուռի մասնաճիւղին կողմէ

Այսօր կիրակի ժամը 3ին 5, Place Nationale

ՑԵՐԵԿՈՅԹ ՇԱՎԻԼԻ ՄԷՋ

Կազմակերպուած Ա. Ե. Հ. Կ. Խաչի Շավիլի մասնաճիւղին կողմէ

Այսօր կիր. ժամը 2.30ին, 134 Route Nationale, Viroflay

ԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՊՈՒԱ ԲՈԼՈՆՊԻ ՄԷՋ

Կազմակերպուած Անիէռ-Պուա Քոլոնպի Հ. Մ. Ը. Մ.ի մասնաճիւղին կողմէ։

2 Մարտ Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ

Salle de la Municipalité, Bois Colombes

Կը մասնակցի Կոմիտաս երգչախումբը։

Առաջնակարգ ճազ, ճոխ պիւֆէ։

Գինները ժողովրդական։ Մուտք՝ այրեւկին՝ 10 ֆրանք, կին 5 ֆր., Այր 7 ֆրանք։

